1916 № 35.—Օգոստոսի 28 ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 2 ր. 50 կ. Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ... հասարակական հիմնարկութեանց համար՝ տարեկան 3 ր., կէս ... 2 ր. Արտասահման՝ տարեկան 5 ր., կէս տարուան ...

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** Թիֆլիս, Արտաշարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** տողին 10 կոպ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։

Տպ— [illegible] ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՄՈՌԱՑՈՒԱԾ ՀԱՅԵՐ

*Աչքից հեռացած, մտքից մոռացած,*
*Իրանք անլեզու, աշխարհս անիրաւ։*

Մեր դրութիւնը բացառիկ, անօրինակ է։ Աշխարհասասան և աշխարհաւեր այս պատերազմը այնպիսի աղէտ է բերել հայ ազգի գլխին, որ ոչ մի ճարտար գրիչ նկարագրել չէ կարող և ոչ մի նոր Երեմիա ողբալու բաւական մեր կորուստները. գիւղերն ու քաղաքներն այրեցաւեր, քարուքանդ ու ամայի և դաշտերն ու լեռներն արիւնաներկ. բնակիչներից ո՛րը նահատակուած, ո՛րը վտարուած անապատներ, ո՛րը փախստական-թափառական։ Մեր աչքերը ծով դառնային, ծովն էլ թանաք՝ բաւական չէին ճիշտ նկարագրելու և ողբալու այս արհաւիրքը։ Մեռելներին ժամանակ կունենանք մեռելոցներին յիշելու «ձէնք դնելու». անապատ վտարուածներին, ասում են, մարդասէր ամերիկացիք են օգնում, փախստականների համար Ռուսաստանը և անգլիացիք են հոգում, ինչպէս և հայ ժողովուրդը իւրովանն։

Բայց մնում են տակաւին Տաճկահայաստանում գերուած և խլամացրած հայեր։ Այսպիսիներից նրանք, որ գտնւում են քիւրդերի, մանաւանդ դղրաշ քիւրդերի ձեռքում, կարելի է ասել, որ տակաւին ապահով են։ Այսպիսիներին ազատելու համար է, որ այժմ անհուն ջանքեր են թափւում. մի հայ՝ մի ոսկի—արդէն թռուցիկ խօսք է։ Մեր ժողովրդական դիւցազների՝ Անդրանիկի, Մուրադի և Սեպուհի ջանքերով ազատուել են արդէն 1400-ից աւելի գերութիւնից, իսկ որ գլխաւորն է՝ այս ձեռնարկութեան լուրը կապահովի Տաճկահայաստանի դեռ աննուաճ մասերում գերի մնացածներից, եթէ ոչ բոլորի, գէթ շատերի կեանքը։ Իսկ ինչ է վիճակը այն հայերի, որոնք գտնւում են Տաճկահայաստանի չնուաճուած, ռազմաբեմից հեռու և կամ թէկուզ շատ մօտ, բայց թուրքերի ձեռքին. այդ կարելի է գէթ մասամբ պատկերացնել, եթէ միայն այդ հնարաւոր է, երբ ի նկատի առնենք կացութիւնը ռուս յաղթական բանակի նուաճուած մասերում, յատկապէս քաղաքներում՝ Կարնում, Բաբերդում, Երզնկայում և այլն։

Օր չի անցնում, որ այս կամ այն թուրքի տանից և հարէմից դուրս չպրծնեն հազար ու մի տանջանքներից յետոյ և կամ չազատուեն լլկուած օրիորդներ, տանջուած ու չարչարուած երեխաներ, մահմեդականացրած, վայրենացած, մայրենի լեզուն մոռացած ահ ու սարսափի տակ և անլեզու դարձած։ Մինչդեռ այս նորահնար չարիքին վերջ դնելու համար հարկաւոր էր միայն մի լուրջ հրաման, ինչպէս ասում է Рѣчь-ում Վերմիշեանը,—որի

թարգմանութիւնը մենք տալիս ենք մեր ընթերցողներին,— և փորձն էլ ցոյց է տուել այս դիտողութեան ճշտութիւնը Երզնկայում։ Բայց ինչու այդ տեղի չի ունենում Կարնում և այլուրեք։ Ե՞րբ է լինելու այդ ընդհանուր հրամանը։ Հայ ժողովուրդը— որ ազգովին ողջակէզ է լինում իւր առ Համաձայնութեան պետութիւնները և մանաւանդ առ Ռուսաստանը տածած համակրութեան և անձնուիրութեան— վաղուց անձկութեամբ սպասում է այդ բաւական ուշացած իրաւունքի և արդարութեան հրամանին։ Արդեօք պիտի գա՞յ այդ հրամանը, թէ՞ իզուր պիտի սպասի հայ ժողովուրդը... Այն ժողովուրդը, որ վաղուց ողբացել է իւր վիճակը։

Յորի՜ բլբուլ, յորի՜ սիրուն
Էս լուս ու մութ առաւօտուն,
Էս լուս ու մութ առաւօտուն
Ա՜խ ու վախով, կուլաս արուն.

Ձմեռ տիրեց մեր սարերուն
Խուրեց գուներ ծաղկներուն
Խուրեց գուներ ծաղկներուն
Կտրեց ձէներ մեր ձագերուն։

(Ժողովրդական երգ Կաղզուանի շրջանում լսուած)։

Սկայ

# Ներքին տեսութիւն

## ՏԱՃԿԱՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Մինչև այսօր հասարակութեանը շարունակում է յուզել վիճակն այն տաճկահայ գերիների, որոնք տառապում են գերութեան մէջ ռուսաց կողմից նուաճած Տաճկահայաստանի շրջաններում։

Հայերէն «Հորիզոն» լրագիրը կոչ արեց նուիրատուութիւններով կազմել մի հիմնադրամ (ֆոնդ), որը պիտի յատկացուի յատկապէս «գերուած» հայերի փրկանքին։

Մեր անհատական կարծիքով հայերին «գերութիւնից» ազատելը փրկանքի ճանապարհով չը պիտի լինի. միակ միջոցը մենք համարում ենք ռուս կառավարութիւնից ելած մի այնպիսի իշխանական, բաւական հեղինակաւոր և ուժեղ կարգադրութիւն, որ ստիպէր յարգել կառավարութեան հրամանները, բոլոր նրանց, որոնք մնում են ռուսաց իշխանութեան ենթարկուած երկրներում։ Մենք կարծում ենք, որ «գերուածների» փրկանքի գաղափարներըն ինքնին պէտք է բոլորովին ժխտել, որովհետև հենց այդպիսի գաղափարը միանգամայն խորթ է և հակառակ ռուսաց օրէնքներին և իրաւակարգին։

Ռուսաստանը հաւատարիմ մնալով իր այս օրէնքներին, չի կարող հանդուրժել, որ այն հողում, ուր իշխում է ռուսաց օրէնքը, բնակչութեան մի մասը «գերուած» մնայ միւս մասի մօտ, և որ տերկութեան այդ նոր ձևը, ինչպէս մի օրինական հաստատութիւն, վերացուէր դրամական փրկանք տալու համաձայնութեամբ։ Ձեռնապէս, ինքնին գնման գաղափարը, ինչպէս մի բոլորովին անտեղի երևոյթ Ռուսաստանի արժանապատուութեան և պրեստիժի համար նուաճուած գաւառներում, վնասակար է։

Այսպիսով մնում է վերացնել թիւրքերի այդ ամօթաբեր ժառանգութիւնը միայն ստիպողական ճանապարհով՝ առանց ամենանուաղ ներողամտութեան և զիջողութեան։

Եւ, եթէ, օրինակ, զինուորական իշխանութիւնը հրատարակէր մի յայտարարութիւն, թէ զինուորական դատին կը յանձնուին ամենքը, որ չեն ազատի և յանձնի տեղական իշխանութեան բոլոր «գերուած» հայ կանայք և երեխաները, և եթէ այսպիսի կարգադրութիւնից յետոյ իշխանութիւնը երկու երեք օրինակով ցոյց տար, որ այդ կարգադրութիւն արուած է «ի կատարածելու» համար— ապա, կարծում ենք, որ այս մէկն էլ սկզբներում բաւական էր, որ արիւնոտ օրերի «որսը» դուրս գար ազատ աշխարհ, օրհնելով ռուսաց յաղթական զէնքը ու Մեծն Ռուսիան, որը Տաճկա-Հայաստանի խուլ անկիւններում լոյս և ազատութիւն է տանում։

Ահա հարց, արժանի դառնալու այն մեծ հարցերի կողքին, որ գրուած են այս մեծ պատերազմի դրօշակի վրայ։ (Գ. Վերմիշև „Рѣчь“ 218)։

## † ՍԱՐԳԻՍ ՄԵԼՔՈՒՄԵԱՆ

Սարգիս Մելքումեանը ծնուել է Մոզդոկ քաղաքում։ Սկզբնական կրթութիւնը ստացել է տեղի հայոց եկեղեցական-ծխական դպրոցում և այդտեղ աւարտելով՝ մտել է Ներսիսեան դպրոցի III դասարանը։

1879 թուին աւարտելով Ներսիսեան դպրոցը, գործունէութեան ասպարէզ է ընտրում ուսուցչութիւնը և առանձին հմտութիւն և բարեխղճութիւն ցոյց տալով՝ մօտ 10 տարի վարում է այդ պաշտօնը։

Ուսուցչական ասպարէզ մտնելուց առաջ նա մտածում էր սովորել կաշեգործութիւն և Թիֆլիսում կաշի պատրաստելու գործարան բանալ՝ մեր երկրում զարգացնելու այդ արդիւնագործութիւնը։

Թողնելով ուսուցչական ասպարէզը գնում է Լեհաստան և այնտեղի յայտնի գործարաններից մէկում մօտ հինգ տարուայ ընթացքում սովորում է կատարելագործած ձևով կաշի պատրաստելը։

Վերադառնալով Թիֆլիս՝ նա իր սեփական միջոցներով չի կարողանում գործարան բանալ, որովհետև այդպիսի գործին հարկաւոր էր տասնեակ հազարներ։

Ջնայած այդ բանին նա յոյսը չի կտրում և հարուստ վաճառականներից ծանօթների մեծ շրջան է ձեռք բերում։

Նա կամենում է այդ ծանօթների աջակցութեամբ բանալ Թիֆլիսում իր փափագած գործարանը, սակայն չէ յաջողում։

Այսպիսով Ս. Մելքումեանի երկար տարիների աշխատանքը յաջողութեամբ չի պսակւում և Լեհաստանից վերադառնալուց յետոյ մօտ 2 տարի անգործ է մնում Թիֆլիսում։

Այս անյաջողութիւնից յետոյ Ս. Մելքումեանը մտադրում է նորից ուսուցչութիւն անել, բայց միտքը փոխում է, և գնում Բագու, զբաղւում նաւթարդիւնաբերական գործով։

Բագւում 4—5 տարի մնալուց յետոյ՝ նորից վերադառնում է Թիֆլիս, ուր մի քանի ժամանակից յետոյ ընտրւում է բանկի վարչութեան անդամ և 1908 թուին Կ.Հ. Բարեգործական Ը-թեան Խորհրդի սկզբում փոխ-անդամ և այնուհետև անդամ, որպիսի պաշտօնի մէջ մնում է մինչև իր վերջին հիւանդութիւնը։

Իւր պաշտօնին առանձին եռանդով է կպչում նա և իբրև երբեմնի ուսուցիչ առանձնապէս հետաքրքրւում է դպրոցական գործով և Խորհուրդն էլ իւրաքանչիւր ընտրութեան ժամանակ նրան ընտրում է իբրև դպրոցական մասնաժողովի անդամ։

Միևնոյն ժամանակ նա ընտրւում է նաև Յովնանեան դպրոցի հոգաբարձու և այդ պաշտօնի մէջ մնում է 3 տարի։

1910 թուին միտք է ծագում Թիֆլիսում բանալ Բ. Փոխատու վարկի ընկերութիւն, որի հիմնադիրների շարքում լինում է Ս. Մելքումեան։ Ընկերութեան հաստատումից յետոյ Ս. Մելքումեանը ընտրւում է բանկի վերատեսուչ (դիրեկտոր) և մնում է այդ պաշտօնում մինչև իր մահը, շարունակ վերընտրուելով։

*Ս. Մելքումեանը երկար ժամանակ տառապում է Թոքերի խեցգետնի (ռակ) հիւանդութեամբ։ Նա բժշկւում է Թիֆլիսում, սակայն հիւանդութիւնը լուրջ կերպարանք ստանալով բժիշկների խորհրդով գնաց իւր ծննդավայրը, Մոզդոկ, որտեղ և մեռաւ սոյն տարուայ յուլիսի 31-ին։ Բնաւորութեամբ քաղցրահամբոյր և համակրելի էր իւր ծանօթ շրջաններին։ Նա իր համեստ կարողութիւնից նուիրել է իր երկար տարիներ փայփայած Կ. Հ. Բ. Ընկերութեանը 5,000 ռ.։ Յիշատակն արդարոյն օրհնութեամբ եղիցի։*

*Ա. Փարեմուզեան*

## ԳԱՂԹԱԿԱՆԱԿԱՆ ԳՈՐԾԵՐ

*Վերադարձի և յետադարձերի շրջանումն ենք ապրում այժմ։ Երկրից նահանջած հայ ժողովուրդը նորից հրաման ստանալով վերադառնալու երկիրը՝ կիսատ թողնուած աշխատանքները վերսկսելու համար, այժմ, ինչպէս լսում ենք, խուռներամ վերադարձի ճանապարհն է բռնել։*

*Պարսկաստանի կողմից մօտ 2,000 հոգի, իսկ Իգդիրի կողմից 2,500 կրկին արդէն ճանապարհ են ընկել։ Ապա ստացուած տեղեկութիւնների համաձայն, Վասպուրականը այժմ մօտ 12,000 բնակիչ ունի, որից 5,000-ը իր տեղից գրեթէ չը շարժուեց նահանջի ժամանակ։ Այս խիստ ուշագրաւ երևոյթը ցոյց է տալիս, որ հազար տեղից յօշոտուած հայ ժողովուրդը՝ որքան սիրով ու գորովով կապուած է իւր սեփական հայրենիքի հողին ու ջրին և թէ վերադարձի ու յետադարձի սարսափելի յոգնութիւններն ու զրկանքները, երկրի սահմաններում մոլեգին աչքերով սպասող թշնամու սպառնալիքը որքան անզօր են նուաղեցնելու նրա վերածնութեան և հայրենաշինութեան ոյժը։ Ոչինչ այնքան գեղեցիկ ու վեհ չէ, որքան տեսնել այս կենսունակ զանգուածի հոգեկան բարձր արիութիւնը, դարերու ժառանգութեամբ պահած նրա աննկուն կամքն ու արիութիւնը։*

*Երբ մէկ կողմից վերադարձն սկսած է դէպի Վասպուրական, միւս կողմից Պարսկաստանի հայութիւնը սկսած է նահանջել զանազան ուղղութիւններով։ Օգոստոսի 4-ից Թեհրանի հայ գաղութը ճանապարհ է ընկել։ Մինչև հիմա ստացուած ճիշտ տեղեկութիւնների համեմատ Ռաշտ են հասել մօտ 15,000 փախստական։ Այդ հայութիւնը հեռու լինելով Կովկասից և վարակիչ հիւանդութիւնների երկիւղի պատճառով Կովկասը անցնելու արտօնութիւնը չունենալով՝ մնացել է խիստ անպաշտպան և անապահով դրութեան մատնուած։*

*Թէ ինչ պիտի լինի այդ լքուած գաղթականների դրութիւնը՝ դժուար է որոշել այժմեանից։*

*Նա էլ միւսների նման մեծ մասամբ պիտի զոհ գնայ քայքայման ու մահուան անողոք ճիրաններին։*

*Մուշից ու Սասունից գաղթած մօտ 10,000 ժողովուրդը տեղաւորուած է Կողբի շրջանում։ Սոյն փախստականները պիտի տեղաւորուին Արագածի գիւղերում։*

*Վերոյիշեալ 10,000 փախստականների 5,000-ը սասունցիներ, խութեցիներ և Դիարբեքիրի կողմերից փախչողներն են, որոնք բացարձակապէս զուրկ են կենսական պիտոյքներից անգամ. 400 վերստ ճանապարհ կտրած են փոխադրական միջոցներից զուրկ վիճակով։ Այդ փախստականները աւելի քայքայուած ու խղճալի մի վիճակ են ներկայացնում. Նրանք առաջին անգամն է, որ ոտք են կոխում Կովկաս, հետևաբար արժանի են աչալուրջ և լայն հոգացողութեան։*

*Այդքան երկար ճանապարհը կտրող փախստականների համար անհրաժեշտ են փոխադրական մեծ միջոցներ և կառավարական կարևոր կարգադրութիւններ։*

*Հարկաւոր է Կովկասում հնար եղած չափով պահպանել երկրի այդ ապագայ հայութիւնը, որ իւր կրծքում երբէք չի մարեցրել կենսունակութեան վաղեմի ոյժը։ Թող ինչքան ուզում են զանազան անձինք գրիչներ կոտրեն և խաղան նրա ճակատագրի հետ կապ ունեցող խնդիրների հետ։ Թող որքան ուզում են «դատարկուած» ու «ամայացած» յայտարարեն Հայաստանը հայերից. այդպիսիները երբէք չեն կարող խորտակել այդ փախստական ժողովրդի հաւատքը հանդէպ իւր ապագայի և իւր բաղձանքների։*

*Թիւրքական և քիւրդական տարրերը աւելի են պակասել ու չքացել Հայկական վիլայէթներում, քան կարծւում է. Նրանք մեզանից աւելի լաւ պայմաններում չեն։ Դեռ պատերազմի ընթացքում նրանք բազմաթիւ զոհեր են տուել, հսկայական կորուստներ ունեցել են մանաւանդ սնունդի և այլ կենսական միջոցների խիստ պակասութիւնից։*

*Նրանք բնութիւնից աւելի քիչ վարձատրուած են դիմացկունութեան ու բարոյական արիութեան տեսակէտից քան հայը, որի բնութեան և մարդկային տարրերների դէմ ցոյց տուած դիմադրութեան ոյժը վաղուց զարմացրել է քաղաքակիրթ աշխարհին։*

*Հայորդի*

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՐՑԵՐ*)

### Բ.

### 6. ՇՐՋԱՆԱՅԻՆ ՏԵՍՉՈՒԹԻՒՆ

*Որ մեր սակաւաթիւ թեմական տեսուչները ներկայ պայմաններում անկարող են Կովկասի մեծաքանակ դպրոցները տարին մի քանի անգամ այցելել, հարկաւոր և անհրաժեշտ ցուցմունքներ տալ, զարկ տալ ուսումնակ.-գործի յառաջադիմութեան — այդ մասին երկու կարծիք լինել չի կարող։ Բայց որ հսկողութիւնը (կօնտրօլը)՝ տեսչութիւնը մեր դպրոցների թէ որակի, թէ քանակի տեսակէտից անհրաժեշտ է, այդ էլ անուրանալի է։ Մեր տեսուչները ի վիճակի չեն տարին մի քանի անգամ նոյն իսկ բոլոր ուսումնարանները զգալի ժամանակով այցելել։ Կան և այնպիսի շրջաններ, որոնք զուրկ են տեսչից։ Տեսուչը պիտի կապուած լինի դպրոցների հետ, միշտ հետամուտ լինի նրանց ներքին կեանքին, յաճախակի կազմակերպի փորձնական դասեր, ուսուցչական համախմբումներ։ Այսպիսի պարտականութիւններ կատարելու համար հարկաւոր են անպայման շրջանային տեսուչներ ևս, որոնց կարիքն ամեն տարի զգացւում է, միշտ պահանջ է դրւում, բայց մինչև այսօր էլ չի իրականանում։ Դպրոցական յառաջադիմութիւնն աչքի առաջ ունենալով, առաջարկում ենք թեմական իշխանութեան լուրջ կերպով մտածել այս առթիւ և գործը գլուխ բերել։*

### 7. ԴԱՍԱԳՐՔԵՐԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ

*Անշուշտ դասագրքերի ընտրութիւնը, տնօրինումը կախուած է իւրաքանչիւր դպրոցի մանկավարժական կազմի հայեցողութիւնից, մանաւանդ որ մեր դպրոցների համար գործածելի դասագրքերի պարտադիր ցանկ գոյութիւն չունի։ Սակայն երբ մի քանի ուսումնարաններում պատահում էք վաղուց արդէն գործածութիւնից անցած և մանկավարժական պահանջներին գոհացում չը տուող դասագրքեր, չէք կարողանում լռել։*

*Մի՞թէ մեր մանկավարժական նորագոյն գրականութիւնը այնքան աղքատ է, որ անկարող է գէթ մայրենի լեզուի դասագրքերի կողմից գոհացնել մեր մանկավարժներին։ Այսօր հրապարակի վրայ են և արդէն ընդունելութիւն են գտել «Մեր Դպրոցը», «Լուսաբեր», «Դասընկեր» և «Կայծեր»։ Ահաւասիկ ձեզ դասագրքեր, արէք ցանկալի ընտրութիւնը։ Թարմութիւն և մանկավարժական կենսունակութիւն պահպանեցէք և միւս առարկաների դասագրքերի նկատմամբ։ Դասագրքեր ընտրելու գործում մեզ*

*) Տես «Համբաւաբեր» № 34։

*առաջնորդելու են մեր սեպհական հայեացքները և ոչ թէ կողմնակի կապերն ու խնամութիւնները:*

### 8. ԴՊՐՈՑԱԿԱՆ ՆԵՐՔԻՆ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹԻՒՆ

*Երկար սպասումներից յետոյ վերջապէս 1915/16 ուսումնական տարուանից դպրոցներին տրուեց Վեհափառի կողմից հաստատուած «Հայոց ծխական-եկեղ. դպրոցների ժամանակաւոր ներքին կանոնադրութիւնը», որը և ուղղութիւն է տալու դպրոցական ներքին կեանքին: Թւում էր, թէ մեր դպրոցական վարիչների կողմից եղած յաճախակի անարդարութիւնները և անկարգութիւնները, որոնք իբր թէ համարւում էին կանոնադրութեան բացակայութեան արդիւնք, վերջինից յետոյ պիտի դադարէին ընդմիշտ և մեր դպրոցական կեանքում պիտի վերականգնէր վերջապէս խաղաղ կեանքը և համերաշխ գործակցութիւնը: Սակայն ոչ մի տարի մեզ մօտ այնպիսի անմիաբանութիւն և անկանոնութիւն չի տիրել, ինչպէս անցեալ դպրոցական տարում: Արձակւում է Ախալցխայի ուսուցչական կազմից 25 դասատու առանց պատճառաբանութեան. իսկ տեսուչը և օգնականը մնում են պաշտօնում: Դիլիջանի ամբողջ ուսուցչական խումբը հեռացւում է: Թանգրյեան դպրոցի 27 ամեայ դասատու ուսուցիչ պ. Նազարէթեանը զզուած հեռանում է իր խնամած ուսումնարանից. հոգաբարձութիւնը առանց որևէ պատճառի այս թանգութեանը կրճատում է վաստակաւոր վարժուհու դասերը և տալիս ցանկացած մարդուն: Նորաշէն դպրոցի կրօնուսոյց քահանան և կրօնասոյց է և հոգաբարձութեան անդամ. Զ-նենց եկեղեցու աւագ քահանան համանուն դպրոցում և հոգաբարձ. Նախագահ է և աւագ-ուսուցիչ, այլ և տեղ է տուել դպրոցում իր մերձաւորներին: Ս. Կ-ափ հոգաբարձութիւնը պարտաւորեցնում է դռնապահին պատի վրայ նշանակել աւագ-ուսուցչի ուշանալու վայրկեանների թիւը, մինչդեռ նրա արիւն քրտինքով վաստակածը հաշուի չի առնւում: Եթէ Թիֆլիսի նման կենտրոնական վայրում, որտեղ հասարակական հսկողութիւն կայ միշտ, այսպիսի անիշխանութիւն է տիրում, ապա ի՞նչ էք պահանջում դուք կորած-մոլորած գիւղերից: Կսկծալին այն է, որ յանցանքի մի զգալի մասն էլ ծանրանում է և ուսուցիչների վրայ:*

*Ե՞րբ պէտք է վերջ դրուին այս բոլոր խժդժութիւններին...*

### 9. ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ՑԱՆԿ

*Ահա մի հարց, որ շատ մեծ կարևորութիւն ունի մեր թէ դպրոցական յարմար կեանքի և թէ ուսումնական գործի յառաջդիմման տեսակէտից և որի գլուխ գալը մեծ մասամբ կախուած է թեմական տեսուչներից: «Ուսուցիչների ցանկ» չլինելու պատճառաւ տեղից վեր կացող ամեն մի բախտախնդիր համարձակւում է ոտք կոխել դպրոցական սուրբ հիմնարկութիւնները և սարիներով մաշել մատաղ սերնդի ուղեղն ու սիրտը: Կարող են լինել և դպրոցաւարտներ, սակայն իրենց խառնուածքով և ուսուցչական անկարողութեամբ միանգամայն անհամապատասխան են իրենց դժուարին կոչման. բացի այդ, նրանք կարող են լինել և անհամերաշխ: Վերջապէս մեր դպրոցները զերծ չեն և հիւանդոտ ուսուցիչներից: Ահաւասիկ ուսուցչական կոչումը բարձր պահելու և իսկական մանկավարժներ ունենալու համար անպայման անհրաժեշտ է կազմել «Ուսուցչական ցանկ», որին տարէցտարի կաւելանան նորերը: Պէտք է մաքրագործել այդ դասակարգը համաձայն իւր բարձր կոչման:*

### 10. ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ ՕՐԳԱՆ

*Փակելով սոյն յօդուածաշարքը մենք անհրաժեշտ ենք համարում կանգ առնել մի խոշոր դպրոցական բացի վրայ ևս և այդ հանգամանքի վրայ Ուսուցչական Միութեան բարի ուշադրութիւնը հրաւիրել: Մեր մէջ սնկի նման բսնում են բոլորովին աւելորդ և առանց որևէ ուղղութեան ու անբովանդակալից օրաթերթեր, բայց շաբաթաթերթեր և ամսագրեր—երբէք: Մինչդեռ այդ կողմից մեր հարևան վրացիները անպայման աւելի բարձր են մեզանից: Բաւական է յիշատակել, որ նրանց մէջ դեռ կենսունակ է «Թէատրի դա ցխովրէբա» 37 ամեայ շաբաթաթերթը: Իսկապէս, ցաւալի է յիշատակել, որ այսօր մենք ոչ մի գրական-հասարակական ամսագիր չունենք: Մեր մատնանշած բացը այսօր որոշ չափով լրացնում է «Համբաւաբերը»: Իսկ գալով մանկավարժական աշխարհին, այդ կողմից արդէն կատարելապէս բոբիկ ենք: Ունէինք «Նոր-Դպրոց», որը անպայման կարող էր գոհացնել մեր մանկավարժներին, սակայն նրանց հիւանդութիւն դարձած անընթերցասիրութեան պատճառով՝ այսօր ընդմիշտ դադարել է: Մինչդեռ որքան մանկավարժական և առօրեայ նոր հարցեր, դիտողութիւններ, որքան մեթոդներ կան, որոնց պարտաւոր են իրազեկ լինել մեր ուսուցիչ-ուսուցչուհիները, եթէ նրանք սիրում են իրենց կոչումը և ցանկալի են համարում մանկավարժական նորագոյն ձևերով և թարմ ուժերով առաջ տանել դպրոցական վեհ գործը: Ինչո՞ւ Կովկասի մեծաքանակ ուսուցչութիւնը չը պիտի կարողանայ մի մանկավարժական թերթ պահել: Սիրում ենք յուսալ, որ Ուսուցչական Միութիւնը յանձն կառնի մանկավարժական կեանքում այդ խոշոր բացը ծածկելու դժուարութիւնը և շուտով գործի կանցնի, վստահ լինելով, որ մեր ուսուցչական դասակարգը կը դադարի վերջապէս լճացած և անկազմակերպ ու սահմանափակ մնալուց:*

Գիսակ

*13 օգոստ. 1916*
*Թիֆլիս*

---

## ԳԱՒԱՌ

*Նախիջևան, 10 օգոստոսի*

### ՎԱՆԻ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐԸ

*Ակներև է, որ ժողովրդի խաղաղ և կենսունակ բարօրութիւնն՝ իրեն բոլոր բարեմասնութեամբ՝ ի մասնաւորի կախուած է իր լուսամիտ հովիւ առաջնորդէն, մանաւանդ՝ հօտի չարաչար տանջուած և ցիրուցան եղած ցաւագին դառն օրերում:*

*Աւա՜ղ, այսօրուան հալածական տունէ ու տեղէ, հողէ ու ջրէ, հովուէ ու առաջնորդէ, հարազատէ ու բարեկամէ զրկուած ու տանջուած Տաճկահայութիւնը՝ իւր կենսական մխիթարութիւնը և սփոփանքը գլխաւորապէս գտնում է հեռու աշխարհներից եկած աշխարհական և հոգևոր անձանց մարդասիրական կարեկցութեամբ:*

*Վանի աւերումը ողբացող՝ կրկին Վան վերադարձած՝ վանեցի հարազատ ժողովուրդը, երազելով իր երբեմնի շէն, պատմական քաղաքի կրկին վերանորոգումն, խորհրդակցում ու մտածում է նրա վերաշինութեան և վերակենդանութեան համար: Կազմուած խորհրդակցական ժողովում առաջին հարցը դրւում է առաջնորդի ընտրութիւնը, ուր առաջարկւում են, որպէս ընտրելիներ Թիֆլիսի Առաջնորդ Մեսրոպ Եպիսկոպոսը, Երևանի փոխ. թեմակալ Խորէն Եպիսկոպոսը և Նախիջևանի փոխանորդ Սիօն վարդապետը:*

Վանեցի

—

*ԱԽԱԼՑԽԱ, 18 օգոստոսի.—Քաղաքումս երեխաների մէջ խիստ տարածուած է քութէշ (սկարլատինա) հիւանդութիւնը, որ յաճախ մահուան դէպքերով է վերջանում:*

*Շրջակայ գիւղերում անասունների մէջ տարածուել է ժանտախտ հիւանդութիւնը:*

*Կ. Հ. Բ. Ընկ. Ախալցխայի որբանոցի Վարչութիւնը նոյն որբանոցի օգտին ամսիս 11-ին քաղաքումս կազմակերպել էր դրօշակների վաճառք, որից մուտք գոյացաւ 457 ռ. 5 կոպէկ.*

Թ.

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է յօգուտ փախստականների՝ պ. Միհրան Աղէքսանդրեան Անանեանից 1000 ռ.։

***

Գ. Մկրտիչ Աւետիսեան Խանգուլեանը ներկայացրել է Խորհրդին 100 ռ. խնդրելով ընդունել իրեն Ընկ. մշտական անդամ։ Խորհուրդը յարգելով Նորա խնդիրը տուել է նորան մշտական անդամութեան մրցագիր (ДИПЛОМЪ)։

### Ճ Ի Ւ Ղ Ե Ր

Կ. Հ. Բ. Ը-թեան Ախալցխայի ճիւղի Որբանոցի օգտին կրկին ստացուել է նուէրներ հետեւեալ անձերից՝ պ. Յ. Պուլղուրեանից ի յիշատակ իւր եղբօրորդու Օնիկի 25 ռ., տ. Պօղոսեանից 10 ռ., փոքրիկ Ն. Մարտիրոսեանից 10 ռ., Ա. Նազարէթեանից 1 ռ., տիկ. Ս. Աղաջանեանից 2 ռ., քաղաքիս մխճիների համքարութիւնից 45 ռ., Ս. Սվաղճեանի միջոցով Ախալքալաքի ճանապարհին հանգանակած 11 ռ.—50 կ., Կ. Տէր-Յակոբեանի միջ. հարսանիքում հանգան. 20 ռ.—65 կոպ., Ծուղրուտ գիւղի հասարակութիւնից 28 ռ.—7 կ., շորեր, գուլպաներ. Ծիրայ գիւղի հասարակութիւնից 8 ռ.—48 կոպ. և ուրիշ շորեր, գուլպաներ. Մեծ Պամաճ գիւղի հասարակութիւնից—22 ռ.—50 կ. և շորեր ու գուլպաներ. Սադել գիւղի հասարակութիւնից 26 ռ.—10 կ. և գուլպաներ, շորեր, աղլուխներ. Օրալ գիւղի հասարակութիւնից 1 ռ.—56 կ. և շորեր. Տամալայ գիւղից 53 ռ.—62 կ. և գուլպաներ, խունջաններ ու շորեր. օր. Մ. Ճարակեանից 5 ռ., Յ. Երեմնցեանից 7 ռ., Տ. Խաչատրեանից 3 ռ., Փոքր-Պամաճ գիւղից 11 ռ. և գուլպաներ ու շորեր. Յ. Կոունկեանից 10 զոյգ ոտնամաններ, Յ. Պապոյեանից 5 զոյգ ոտնամաններ. Ս. Կոունկեանից 2 զոյգ և խոստացել է մշտական 2 որբի ոտնամանները տալու. Թ. Քիւքճեանից 197 որբի լողացնելու ծախսը և մի ոչխար, Ս. Սվաղճեանից և Յ. Մէլիճեանի միջոցով խնջոյքում հանգան. 23 ռ.—44 կ., օր. Մ. Քրթեանից 9 ռ., Վարդավառին՝ Ս. Սվաղճեանցի միջոցով Ծուղրուտում հանգանակած 16 ռ.—30 կ., Վ. Ղարագեօզեանից—7 ռ.—50 կ., Մ. Մաթէոսեանի և Ալէքսանեանի միջոցով հարսանիքում հաւաքած 19 ռ., եղբարք Բ. և Ն. Այվազեաններից իրանց հօր յիշատակին 50 ռ., Թ. Ասլանեանից—մի գառ, Ս. Վանցեանից իւր ընկ. շրջ. հանգ. 4 ռ. 30 կ., Խ. Քիրիշճեանից 27 ֆ. սունկ, Ալ. Եանոկիսից 8 ռ., տիկ. Ս. Զաթալբաշեանից 3 ռ., Ոճից 15 ռ., Մ. Մուրադեանից 25 ռ., Ս. Սվաղճեանից խնջոյքի մէջ հանգանակած 9 ռ., Մ. Այվազեանից 10 ռ., Ստ. Պալեանի և Խ. Համբարձումեանի միջոցով խնջոյքում հանգ. 8 ռ., Լ. Մանուսաճեանից 1 ռ., Ս. Զոռայեանի և Խ. Ալէքսանեանի միջոցով հանգան. 6 ռ., քաղաքիս նալճիների և դարբինների համքարութիւնից 80 ռ., Աստուածածնայ տօնին Մեծ-Պամաճ գիւղում հանգ. Ս. Սվաղճեանի միջոցով 9 ռ.—57 կ., Փոքր-Պամաճ գիւղում, նոյն անձի միջ. հանգան 6 ռ. 66 կ., Ղուլալիս գիւղից—նոյն անձի միջոց հանգան 4 ռ.—55 կ., Սադել գիւղից նոյն անձի միջ. 12 ռ.—16 կ., Յ. Եօրտանեանից 3 ռ., Կ. Տէր-Յակոբեանից—5 ռ., Ս. Անանիկեանից 6 ռ., պրապորշչիկ Ար. Սերոբեանից 1 ռ. 50 կ., Թ. Յարմանեանից 4 ռ.—90 կ., Ս. Աղաջանեանից 3 ռ. 30 կ., Ստ. Մանուկեանից 9 ռ., Ս. Խաչատրեանից և Յ. Մովսէսեանից 7 ռ., որոնց Մասնախումբս յայտնում է իւր շնորհակալութիւնը։

Մասնախումբի նախագահ Խ. Թէմիրճեան։

---

# ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

## ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

*Բագու—Տէր Միքայէլեանից.*

Հարկաւոր է առանձնակի ուշադրութիւն դարձնել և անել կարգադրութիւն իրաւունք ստանալու Ռաշտ ուղարկելու 800 փուդ ալիւր և 100 փ. շաքար, այնտեղ հաւաքուած գաղթականութեան համար։

Դրութիւնը այստեղ բաւականին լուրջ է։

—

X—*Մխիթար Դարմանեանից.*

Խնուսի և շրջանի, կենտր. կոմիտէի տնօրինութեան տակ գտնուող, սննդատու կայարանները դադարեցրել են իրանց գործունէութիւնը. հարկաւո՞ր է արդեօք վերսկսել գործունէութիւնը. պաշար չը կայ։

Հ. Կենտ. Կոմիտէն իր օգոստ. 22-ի արտակարգ ժողովում քննութեան առնելով այս խնդիրը, որոշեց շարունակել Խնուսում իր գործունէութիւնը։ Այդ մասին յայտնուած է Խնուս՝ Դարմանեանցին։

—

*Ղարաքիլիսա—(Տաճկահայաստան).*

Լիազօր պ. Գ. Փարաջանեանցը հեռագրում է, որ ընդամենը 5,000 հոգի գաղթական անցան, որոնց կէսը ճանապարհեցի Իգդիր, իսկ կէսը՝ Կաղզուան։ Կանանց, երբ հնարաւոր է եղել, ուղարկել եմ ֆուրգոնով. բժշկական օգնութիւն հասցրել է բժ. Օհանեանցը, հիւանդներին տեղաւորել եմ մեր հիւանդանոցում. 400 հոգու բաժանեցի երկու շաբաթուայ ալիւրի պաշար, մինչև որ դրութիւնը այսպէս թէ այնպէս որոշուի։

—

*Ռաշտից—Տեղական կոմիտէից.*

Գաղթականութեան հոսանքը վայրկենաբար կտրուեցաւ. բժշկական օգնութիւն մեր միջոցներով հասցնում ենք. մանրամասնութիւնները կը հաղորդենք։

—

*Բէգլի Ահմատ—Շիրինեանից.*

Խնուսի և Մուշի 200 որբերը արդէն 5 օր է Բէգլի-Ահմատումն են. Կարսի ճիւղը դեռ մինչ ցարդ նրանց տեղափոխութեան համար կարգադրութիւն չէ արել. կարգադրեցէք. որբերի դրութիւնը շատ ծանր է։

—

*Պետրոգրադ—Պապաջանեանից.*

Յատուկ խորհրդակցութիւնը կենտ. կոմիտ. միջնորդութիւնը յարգել է և 3,740 որբերի դպրոցների պահպանութեան համար յատկացրել է 28,000 ռ. յուլիս, օգոստոս և սեպտ. ամիսների համար, հաշուելով իւրաքանչիւր որբի ուսման ծախս ամսական 2 ռ. 50 կ.։ Յետագայում հայ փախստական որբերի ուսման գործը վարելու է Տատեանայի Կոմիտէն, ինչպէս որ վարում է նաև ուրիշ ազգերի որբերի կրթութեան գործը։ Նոյն կոմիտէն ընդունել է օգոստոսի—3,740 որբերի նախաճաշը իր վրայ և յատկացրել է 1,870 ռ. և նոյն ամսուայ 5,000 նոր որբերի կրթութեան համար 15,000 ռ., հոկտեմբերի նախաճաշի՝ 1,780 ռ., իսկ կրթական գործի համար՝ 9,350 ռ. և 15,000 ռ. էլ նոր որբերի համար։ Նաև 50,000 ռ. կահաւորման նոր դպրոցների համար, հաշուելով 10 ական ռ. իւրաքանչիւր որբի համար։

*Լոնդոն—Ա. Սաֆրաստեանից.*

*Հեռագրով հաղորդեցէք տեղեկութիւններ Վանից և Մուշից նահանջող 30,000 հայ գաղթականների վիճակի մասին։*

# Քրոնիկոն

*Թէև թերթերում հաղորդուեցաւ թէ հայ ուսուցիչները ազատուած են զինուորական ծառայութիւնից, բայց այդ լուրը ճշտուած չէ։*

***

*Մեր թերթի խմբագրութեան անդամ և քարտուղար Սահփ. Կանայեանի «Անյայտ դաւաճնր Հին Հայաստանի» աշխատութիւնը արժանացել է Ղուկասեան մրցանակաբաշխութեան։*

***

*Արհեստագիտական դպրոցի վերատեսուչ Յովհ. Ակունեանին թոյլատրուած է Թիֆլիսում հրատարակել հայերէն գրական-գիտական և քաղաքական ամսագիր «Միտք» անունով, խմբագրութեամբ փիլիս. դոքտոր Վ. Տէր-Գրիգորեանի։*

***

*Երդուեալ-հաւատարմատար Ա. Ի. Անդրոնիկովը դիմել է նահանգապետին, խնդրելով թոյլատրել իրան Թիֆլիսում երկուշաբթի օրերը հրատարակելու անկուսակցական գրական-հասարակական ռուսերէն թերթ* «Кавказскій Листокъ» *անունով։*

***

*Փախստականների վերաբերեալ գործերը վերջացնելուց յետոյ, մօտ ժամանակներս Կովկաս է գալու Պետական Դումայի անդամ Միք. Պապաջանեանը։*

***

*Դոնի շրջանից ռուսներ՝ Աննա Դոնսկովայան, Մարիա Ուրբան-Անչևիչը և պ. Պ. Պոպովը Մեսրոպ Եպիսկոպոսին ուղարկել են՝ առաջինը 20 ռ., միւսները 18-ական ռ. հայ գերիներ ազատելու համար։*

***

*Ազգարնակութեանը թոյլատրւում է Մետեխի բանտի եկեղեցին յաճախել կիրակի օրերը՝ պատարագի ժամանակ։*

***

*Շուտով Փոխարքայի թոյլտուութեամբ, պետական բանկի Թիֆլիսի գրասենեակին կից կբացուի ռուսական գեղջատու-խրնայողական Պարսկաստանի բանկի ճիւղը։*

***

*Կ. Հ. Բ. Ը-թեան հրատարակութեամբ մօտ օրերս լոյս է տեսել Ա. Փարեմուզեանի «Թէ ինչպէս պէտք է գրադարան-ընթերցարաններ հիմնել և կառավարել» գրքոյկը։*

***

*Մօտ օրերս Քութայիսում կ'սկսուի հրատարակուել վրացերէն լեզուով «Հայաստան» անունով մի շաբաթաթերթ, որի դեկավարները լինելու են այն հայ երիտասարդ գրողները և բանաստեղծները, որոնք գրում են վրացերէն. շաբաթաթերթը նպատակ ունի վրացախօս հայերին ծանօթացնելու հայոց պատմութեանը և հայերի ներկայ իրադարձութեանց։*

***

*Առաջիկայ աշնանը սպասւում է վառելու փայտի մեծ ճգնաժամ։ Այն տեղերում, որտեղից վառելափայտ են արտահանում Թիֆլիս, փայտի ձմերային պատրաստութիւններ չեն տեսնում թէ աշխատող ձեռքերի, թէ երկաթուղու կառքերի և թէ լծկանի պակասութեան պատճառով։ Այդ ի նկատի ունենալով, քաղաքային տնտեսական յանձնաժողովը հարց է յարուցել վառելափայտի սակագինը բարձրացնելու, որ և անցել է։*

*Մի ցաւալի կորուստ.* *Օգոստ. 15-ին Թիֆլիսում երկարատև հիւանդութիւնից յետոյ՝ մեռաւ Վանեցի երիտասարդ մտաւորականներից՝ Բարունակ Դարբինեան։*

*Երբ մի կողմից հայկական բարձունքներում ու դաշտերում թիւրքական-եաթաղանը կատարում է իւր ոճիրը, հնձելով մեր ժողովուրդի բազմաթիւ հատուածները, միւս կողմից Կովկասում իբար ետևից մահանում են գաղթական ժողովուրդի լաւագոյն զաւակները։*

*Բարունակ Դարբինեանցը մէկն էր այդ լաւագոյն և յուսատու զաւակներից, կեանքի ծաղիկ հասակում, երիտասարդական յոյսերի և ձգտումների վառ շրջանում։*

# Համաշխարհային պատերազմը

## ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Կովկասեան ճակատում այս շաբաթ կռիւները կենտրոնանում էին երկու գծի վրայ. առաջին՝ Դիւմիւշխանէ—Քելքիտ, Ջիֆթլըք—Երզնկա և երկրորդ՝ Օղնուտ—Մուշ։ Երկու գծի վրայ էլ թիւրքերը բաւական յամառ յարձակումներ էին սկսել ռուսների դէմ։ Օղնուտի շրջանում նրանց յարձակումն այնքան բուռն էր, որ նրանք մինչև իսկ յաջողել էին 4 գնդով պատռել ռուսական գիծը և գրաւել թնդանօթները։ Բայց ռուս Թիւրքեստանեան գնդերից մէկը յաջող հակայարձակումներով կարողանում է յետ շպրտել տաճիկներին և թնդանօթները յետ խլելով՝ մեծ հարուածներ հասցնել։ Դիւմիւշխանէից և Քելքիտ Ջիֆթլըքից արևմուտք ևս թիւրքերի յարձակումները կատաղի բնոյթ ունէին, սակայն այստեղ էլ նրանք նոյն անյաջողութեան հանդիպեցան, ինչպէս Օղնուտի շրջանում։ Այս կռիւների ժամանակ ռուսները գերել են մօտ 750 մարդ, որոնց թւում 20-ի չափ սպայ, և խլել են մի քանի թնդանօթ և գնդացիր։ Վերջին օրերս կռիւներ տեղի ունէին նաև Նեբրովթ լեռան հարաւ-արևմտեան փեշերից մինչև Վանայ լճի արևմտեան ափերը։ Այստեղ ռուսների դէմ գործում էին գլխաւորապէս քրդական հեծելախմբերը։ Ռուսները նրանց դէմ դուրս են բերել Անգլիայից ստացուած զրահապատ ինքնաշարժները (աւտոմոբիլներ), որոնք իրենց գնդացիրներով մեծ սարսափ են պատճառում քրդերին։ Այս սարսափի ազդեցութեան տակ նրանք թողել են այս քանի օրերս Զխուրի շրջանում մի քանի գիւղեր և քաշուել դէպի արևմուտք։*

*Պարսկական ճակատից կռիւների լուրեր են ստացուած միայն Մուսուլի շրջանից։ Ռուսները Սակկըզից հարաւարևմուտք ճնշում են գործ դնում թշնամու վրայ, ստիպելով նրան քայլ առ քայլ յետ նահանջել։ Բաղդադի ուղղութեան վրայ այս շաբաթը հանգիստ անցաւ։ Օգտուելով այդ հանգամանքից, ռուսներն աշխատում են ընկճել մի շարք թշնամի ցեղեր, որոնք մանաւանդ Սպահանի շրջանում, անհանգստացնում էին նրանց առանձին զօրամասերին։ Այս շաբաթ նրանք ցրել են բախտիարներին 2000 հոգուց բաղկացած մի հրոսակախումբ, բռնել նրա գլխաւորներից մի քանիսին և կախաղան հանել։ «Պարսկաստանի աւազակաբարոյ տարրերի համար այս դէպքն անկասկած զգաստացուցիչ նշանակութիւն կունենայ։*

*Տաճկահայկական ռազմաբեմի միւս ճակատներից այս շաբաթ տեղեկութիւններ չեն ստացուած։ Ներկայ պատերազմական կացութիւնը մեզ վրայ այն տպաւորութիւնն է թողնում, որ թիւրքերը այս վերջին առաջխաղացութեան ժամանակ էլ չկարողացան օգտագործել իրենց առաջին յաջողութիւնները և մի որոշ վախճանի հասցնել։ Ինչպէս իրենց բոլոր ռազմական ձեռնարկները, նոյնպէս և այս ձեռնարկը նրանք սկսեցին մեծ եռանդով, բայց տոկունութիւն չունեցան նոյն եռանդով առաջ տանելու սկսուած գործը։*

## ԱՒՍՏՐՈՒԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռուսական ճակատում մօտ երկու շաբաթուայ նախապատրաստական աշխատանքներից յետոյ ռուսների առաջխաղացութիւնը վերսկսուել է Գալիչի շրջանում և անտառային Կարպատներում։ Երկու վայրումն էլ ռուսները մեծ յաջողութեամբ յետ են շպրտել աւստրօ-գերմանացիներին դիրքերից և ընդամենը երեք օրուայ մէջ գերել մօտ 550 սպայ և 30,000 զինուոր թշնամու բանակներից։ Այս գերիների թւում կան նաև 800-ի չափ թիւրքեր. կռիւը շարունակւում է առանձին եռանդով Գալիչի տակ, որ ռուսներն արդէն ռմբակոծում են։ Հիւսիսային ռազմաբեմերում, մանաւանդ Ռիգայի և Բարանովիչի շրջաններում, գերմանացիներն այս շաբաթ ճգնում էին դուրս մղել ռուսներին իրենց դիրքերից. սակայն չը նայելով որ նրանք այս վայրերում ընդարձակօրէն օգտւում էին թունաւոր գազերից՝ նրանց փորձերը յաջողութիւն չունեցան։ Դվինսկի մօտ ռուսները սկսել են առաջխաղացութեան փորձեր անել. նրանք յաջողել են անցնել գետը և թշնամու ամրութիւններից մի քանիսը գրաւել։

Անգլօ-ֆրանսական ճակատում ևս այս շաբաթ խիստ նշանակալից դէպքեր տեղի ունեցան։ Մի քանի օրուայ կատաղի ռմբակոծութիւնից յետոյ, ֆրանսիացիք Սոմի հիւսիսային և հարաւային գծերի վրայ գրոհ տուին դէպի թշնամու դիրքերը և մօտ 6 վերստ երկարութեան վրայ դուրս մղեցին նրանց առաջաւոր դիրքերից։ Գերմանացիների կորուստները ահագին են։ Բացի բազմաթիւ սպանուածներից ու վիրաւորներից՝ նրանք ֆրանսիացիների ձեռքն են տուել 6950 գերի, 36 թնդանօթ, որոնցից 28-ը ծանր և մեծ քանակութեամբ գնդացիրներ։ Սոմի կռիւներին եռանդուն մասնակցութիւն են ցոյց տուել անգլիացիք, որոնք իրենց ռազմաբեմի վրայ 1000-ի չափ գերի են առել և մի քանի տեղերում գրաւել թշնամու երկրորդ գծի ամրութիւնները։

Վերդէնի մօտ կռիւները ընթանում են ֆրանսիացիների համար բարեյաջող պայմաններում։ Այստեղ նրանք թշնամուց խլել են Վօւշապիտր գծի առաջին շարքի խրամատները, գերի են առել 5,000-ի չափ։

Իտալական ճակատում այս շաբաթ առանձին աչքի ընկնող դէպքեր տեղի չեն ունեցել։ Իտալացոց գլխաւոր շտաբը հրատարակել է Իզոնցոյի կռւում իտալացիների ձեռքն անցած գերիների և աւարի լրիւ հաշիւը։ Գերել են ընդամենը 393 սպայ և 18,365 զինուոր։ Խլուել է թշնամուց 30 թնդանօթ, 92 գնդացիր, 63 ռմբաձիգ, 12,225 հրացան և ահագին քանակութեամբ ռումբեր և պատերազմական այլ իրեր։

Ռումանական ճակատում նոր դաշնակիցների առաջխաղացութիւնը շարունակւում է, թէև սահմանամերձ լեռները արագ զօրաշարժերի հնարաւորութիւն չեն տալիս։ Աւստրօ-հունգարացիները գրեթէ բոլոր գծերում նահանջում են մեծ կորուստներ կրելով։ Օգոստոսի 19-ից մինչև 23-ը ռումանները մօտ 2,800 զինուոր և 22 սպայ են գերել թշնամուց և բաւական քանակութեամբ աւար առել։ Միմիայն Սեպսի սէն Ջորջում նրանց ձեռքն է ընկել 500 վագոն կենսամթերք, էլ չենք խօսում Պետրոշէնի և Կրոնշտադտի աւարների մասին։ Ռումանացոց առաջխաղացութիւնը հիւսիսային և հիւսիս-արևելեան գծերի վրայ թերևս աւելի մեծ թափով տեղի ունենար, եթէ նրա թիկունքը Բուլգարիայի կողմից ապահոված լինէր։

## ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Ռումանիայի հանդէս գալը Բուլղարիայի ռազմական ծրագրերը խառնել է։

Սալոնիկի ճակատում նոր սկսած առաջխաղացութիւնը, որ նախանցեալ շաբաթ, մանաւանդ սերբական գծերի վրայ, սպառնալից բնաւորութիւն էր ստացել, այս շաբաթ կանգ առաւ։ Դաշնակիցները ևս, Յունաստանի քաղաքական-զինուորական իրադարձութիւնների պատճառով, վճռական գործողութիւնների չանցան։ Այս շաբաթ հետևակային կռիւներ տեղի ունէին միայն Դոյրան լճի և Վարդար գետի ափերին—Ֆրանսիական ռազմագծերի վրայ, առանց շօշափելի հետևանքների։ Երկու կողմերում՝ սերբական և անգլիական ռազմագծերի վրայ սովորական թնդանօթամարտ տեղի ունի։

Ռումանաբուլղարական ճակատ. Բուլգարները դաշնակիցների ներխուժը հիւսիսային կողմից կանխելու համար՝ Սալոնիկի ճակատից օգնական զօրքեր քաշելով այս շաբաթ մտան Դոբրուջայի շրջանը և հարաւ-արևմտեան կողմից հասան մինչև Տուտրական քաղաքը։ Սիլիստրայից հարաւ ևս նրանց զօրքերը յարձակումներ են գործում գերման զօրքերի օգնութեամբ։ Ռուսները, անշուշտ նախապէս կայացած համաձայնութեան հիման վրայ, պատերազմի սկզբից մտել էին Դոբրուջա։ Ամսիս 22-ին նրանց առաջապահ գնդերը հանդիպեցին բուլղարների առաջապահ գնդերին։ Կային լուրեր, որոնք այս հանդիպումից սպասում էին, որ Բուլղար զօրքը զէնքը վայր կը դնի իր ազատարարների դէմ չբանեցնելու համար։ Բայց պատերազմը, ինչպէս երևում է, իր տրամաբանութիւնն ունի։ Հանդիպումը սկսուել է ընդհարմամբ, որի միջոցին բուլղարական մի ջոկատ ոչնչացել է։

Ալբանական ճակատում իտալացիք սկսել են արդէն պատերազմական գործողութիւնները։ Նրանք, յենուելով Վոյուսա գետի աջ ափին՝ ասպատակութիւններ են սփռում դէպի Ալբանիայի ներսերը։ Ամսիս 20-ին նրանց զօրամասերը հասել են մինչև Կուսա գիւղը և Դրեսար ու Գրամիստ լեռների ամրութիւնները, սակայն չկարողանալով դիմանալ թշնամու հակայարձակումներին վերադարձել են իրենց բանակատեղին։ Ըստ երևոյթին Իտալացիք դեռ ևս այս շրջանում չեն կենտրոնացրել իրենց զօրքը աւելի վճռական գործողութիւնների անցնելու համար։

—

Բալկանեան ռազմաբեմը համաշխարհային պատերազմի ներկայ փուլում շատ լուրջ նշանակութիւն է ստացել։ Դաշնակիցները աշխատելու են արագութեամբ կտրել Սոֆիա-Բելգրադ գիծը, որպէսզի Բուլղարիան և Տաճկաստանը անջատեն Աւստրօ-Գերմանիայից։ Զգալով այսպիսի մի ծրագրի սարսափը, բուլղարն և աւստրօ-գերմանացիք օրհասական կռուի են պատրաստւում այստեղ։ Բալկաններում մենք շատ խոշոր դէպքերի նախօրեակին ենք գտնւում։

***

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ՏԱՃԿԱՀԱՅԱՍՏԱՆԻ ԻՆՔՆԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

„Кавказск. Слово" օրաթերթի համար 182-ում Տաճկահայաստանի ինքնավարութիւնն առաջին անգամ ժխտող մի յօդուած է տպագրուած «Մագիստրանտ» ստորագրութեամբ։ Այս առթիւ նոյն թերթի խմբագիր Ի. Սեմենովն էլ մի առաջնորդող է գրել միևնոյն համարում։ Տալիս ենք երկուսի թարգմանութիւնը և մեր կարծիքը։

Ա.

### ՏԱՃԿԱՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՊԱԳԱՆ

Տաճկահայաստանի ինքնավարութիւնը (աւտոնոմիան) հանգուցեալ է, որի հետ հայ հասարակութեան ազգային շրջանները շարունակում են քարշ գալ, չունենալով բաւական վճռականութիւն և ոյժ, որպէսզի յանձնեն նրան հողին ու խաչ դնեն վրան։

արևելք գերմանական մեծ յառաջընթացութեան առջև կանգուն ազգային պատնէշը տապալուած կը լինէր։ Բայց հայերն էլ, ինչպէս Փոքր Ասիայում այնպէս և բովանդակ Արևելքում, ամեն տեղ վաճառականութեան մէջ գերմանացոց ահագին մրցակիցներ են։ Յոյներից և հրէաներից աւել՝ լևանտի ժողովուրդների մէջ հայերը ներկայացուցիչն են «մեծ ֆինանսների» և «մեծ առևտուրի»։ Նրանք զօրաւոր և անգերազանցելի են առևտուրի գործերում, որոնք արևելքին յատուկ տեղական պայմանների որոշ ճկուն նուրբ և բարդ մի սիստեմով են լինում։ Եւ Հայերը զրահապատուած են նաև ֆինանսներով։ Թիւրքիան կոտորածների ժամանակ ինքն իսկ մէկէ աւելի անգամներ յիշեց, որ այդպիսով ինքը զոհում էր իր տնտեսապէս ամենից աւելի զօրաւոր տարրը։

Գեներալ Պանկրատովը պատմում է, թէ երբ 1828-ին պատերազմից յետոյ՝ Հայերը հեռացել էին Էրզրումից, քաղաքում հնար չեղաւ գտնել ամենատարրական աշխատանքի ընդունակ մի գործաւոր։ Այժմ Գերմանիան ուզում է իր ճարտարագործութեան և առևտուրի համար վերջնականապէս տէր լինի այս Հայկական շրջաններին, որ ընկած են դէպի Պարսկաստան և Պարսից ծոցը տանող ճանապարհների վրայ։ Բայց Ռուսաստանն էլ ունենալով այստեղ իր յառաջընթացութեան կամ ծաւալման քաղաքականութեան համար ամենազօրաւոր յենակէտներից մին՝ կտրում է նրա ճանապարհը։ Իսկ Հայերն երկու կայսրութիւնների այս լայն հակամարտութեան մէջտեղ ռուսաց կողմն են բռնել։ Դէպի Փոքր Ասիա և դէպի Պարսկաստան հայերը եղել են միշտ ռուս տնտեսութեան ներկայացուցիչները և այդ սկսած դեռ ևս 15-րդ դարից, երբ հայերը առևտրի միջնորդներ էին նախ Բալթիկ ծովի և Արևելքի, ապա Արխանգելսքի և Պարսկաստանի մէջ. մի խօսքով ասես մի բանակի զօրքեր, որ դիմադրում էին գերմանական յառաջընթացութեան. և այդ պատճառաւ էլ պէտք էր կրակով և երկաթով գործ տեսնել նրանց հետ, ճիշտ ինչպէս պատերազմ յայտարարած թշնամու հետ։

Ապա ասում են նաև արտաքին առևտուրով զբաղուող հայ վաճառականական տներ ունէին և դեռ այսօր էլ ունին Գերմանիայում մեծ վարկ։ Սրանք ևս խեղդուեցին ընդհանուր աւերի մէջ։

Տիրակալել ուզող մի կայսերականութեան մեծ ճանապարհի վրայ Հայը մի ժողովուրդ է, որ խաղաղ ապրում էր և միտք չունէր կեանքից հրաժարուելու։ Փորձեցին ջախջախել նրան, որպէսզի ճանապարհը բացուի։ Գերմանական քաղաքակրթութիւնը, որին ոչ մի խիղճը գլխին մարդ չի մտածել բացասաբար վերաբերուել, վերջին տասնամեակում այն ճակատագրական և կազմալուծիչ բանն արաւ, որ դաշնակցեց անասնական բռնութեան և յախուռնութեան հետ։

Քանի բարձրացաւ, քանի գերազանցեց, այնքան էլ թշնամի դարձաւ մարդկութեան։ Թիւրքիայում դաշնակցեց այն ամենի հետ, ինչ ամենավայրենին է։

Հայ ողբերգութեան մէջ մի արիւնոտ հեգնութիւն կայ։ Կ. Պոլսում օտար դիպլոմատիք ներկայացուցչութեան մի պետի՝ որ կոտորածների մասին հարցնում էր մի բարձրաստիճան թիւրք պաշտօնեայի, վերջինս հանդարտ և սառնօրէն գրգռող մի շեշտով ասել է.

—«Ես կարող էի Ձեզ պատասխան էլ չտալ. բայց և լռել էլ չեմ ուզում։ Կոտորածները, այդ մեզ ուրախութիւն են պատճառում։»

(La stampa) Virginio Gayda

Թրգ. Արշ. Ֆէթվաճեան

# Գ ե ղ ա ր ու ե ս տ

## ՄԵԿԸ ՄԻ ՕՐ

Մէկը մի օր, սրտիս ճամբով,
Անուշ կանչեց ու անցաւ.
Քաղցրահամբոյր վառ ժպիտով՝
Հոգիս գերեց ու անցաւ...
Ես այն օրից դարձայ երգիչ,
Սիրոյ, ցաւի ու վշտի.
Խօսքս առայ լացող առուից՝
Երգ հիւսեցի կարօտի...
Երգիս քնքուշ խաղերը բիւր,
Դիպան սարին ու քարին.
Արձագանգեց ձայնը տխուր՝
Զարկուած սրտի ափերին...
Ես այն օրից դարձայ երգիչ,
Երբ նա գերեց իմ հոգին.
Ծաղիկ կեանքիս գարունը ջինջ,
Տուի՝ այրող տանջանքին...

Վարսենիկ Աղասեան

## ԱՆՄԱՀ ԴԻՒՑԱԶՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Իզուր մի՛ թափիր քո ծով աչերից
Արցունքներ աղի.
Երբէք չի՛ շեղի նա ինձ վեհ ուխտից,
Թէկուզ ծով լինի։

Ես քեզ սիրել եմ մանուկ օրերից,
Տանջուել անդադար.
Բայց կայ մի այլ սէր վսեմ քո սէրից...
Ու սուրբ ինձ համար։

Այդ սէրն է վսեմ, դարերով տանջուած,
Իմ հէգ հայրենեաց.
Նա է ինձ կանչում, նրան եմ գնում,
Վրէժով լեցուած։

Եւ ես գնում եմ, իմ կեանքը սրտանց,
Նրան զոհելու,
Դարերից ի վեր վէրքերը խոցուած,
Արեամբ բուժելու։

Իզուր մի՛ թափիր քո ծով աչերից
Արցունքներ աղի.
Երբէք չի՛ շեղի նա ինձ սուրբ գործից,
Թէկուզ ծով լինի։

Հ. Քանանեան Գնունի

25 յունիսի 1916
Աշտարակ

# Գրական-Պատմական

## Ն Կ Ա Ր Ն Ե Ր

### ՅԱՌԱՋԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԷՆ

*Աւեր քաղաքում փլատակների մէջ գտայ հայ կանանց նըկարներ ու հաւաքեցի։ Հարցրի մարդկանց և նրանք ինձ մէկ-մէկ պատմեցին այդ կանանց մասին...*

### ԱՌԱՋԻՆ ՆԿԱՐԸ

*Մարմինը փարթամ, հագուստը շքեղ։ Այտերը կլոր, կզակը կլոր, աչքերը կլոր, մազերը առատ, կուրծքը վեր ելած...*

*—«Ի՞նչ առողջ, լեռնաշունչ կին է»—զարմանում եմ ես՝ նկարը դիտելով։*

*—«Դրա դիակը»,—բացատրում են ինձ,—«այժմ ընկած է ձորի մէջ՝ իրանց գիւղի մօտ։ Սարքոյենց Պօղոսի կնիկ էին ասում, չորս զաւակ ունէր»։*

### ԵՐԿՐՈՐԴ ՆԿԱՐԸ

*Դեռատի աղջիկ։ Մանկական անձեռնամած միամտութիւն շղարշել էր երեսը, որի կերտուածքը նուրբ էր, խնամոտ։ Աչիկները թրթռուն, ճակատը քնքուշիկ և դեռ մտքերից չաղարտուած։ Շրթունքները ծաղկաբաց, ձեռքերը նազիկ և դեռ չառած ոչ հողմ ոչ փորձութիւն ու ոչինչ գրկած...*

*—«Դրան տարան հեռու տեղ», «պահեցին, յետ ուղարկեցին, վերջն էլ գետը նետեցին։ Դիակը ափ էր դուրս շպրտուել. գազաններն էլ եկել լափել էին մարմինը։ Գլուխը մնաց միայն, և գլուխը հիմա ընկած է մի ժայռի տակ...»։*

### ԵՐՐՈՐԴ ՆԿԱՐԸ

*Դարձեալ մի աղջիկ՝ իրար եկած խիտ յօնքերով, շրթունքները զուսպ, ճակատը թախծոտ, այտերի մկանները լարուած, քիթը շիտակ։ Աչքերը իշխում էին դէմքի վրայ՝ ինքնավստահ, զգօն կենդանութեամբ...*

*—«Իսկ սա՞, այս աղջի՞կը»,—հարցնում եմ ես։*

*—«Մեր առաջնորդարանի քարտուղարի քոյրն է»,—պատասխանում են ինձ։ «Թէև տարիքով պստիկ, սակայն քաղաքի մէջ հռչակ էր վայելում՝ իր քաղցրիկ ձայնիկով, որ սոխակի դայլայլումի էր նման... Ամենքը սիրում էին նրան...*

*—«Փրկուա՞ծ է արդեօք»,—հարցնում եմ ես։*

*—«Ջրհորի մէջ են քցել»—պատասխանում են ինձ. «այսպէս է ասում նրանց դրկիցներից մի տղայ, որ պրծել էր կոտորածից»։*

### ՉՈՐՐՈՐԴ ՆԿԱՐԸ

*—«Սա՞... Բաղդասարի կինն է, կարծեօք։ Հա, նա է, նա։ Մորթել են սրան, ստինքները պատռել»,— բացատրում են ինձ։*

### ՀԻՆԳԵՐՈՐԴ ՆԿԱՐԸ

*Ջահէլ մայրը՝ երեխան գրկում։ Մայրը լուսածին, մանուկ՝ լուսնածին։ Մայրը նայում է մանկան երեսին՝ նորավառ արշալոյսի խայտուն շողերով և մանուկը ողջ ողողուած է բերկրանքի ու յոյսերի լուսով...*

*—«Զարչարուած, սպանուած, հող մոխիր դարձած»։*

### ՎԵՑԵՐՈՐԴ ՆԿԱՐԸ

*Հպարտ, ինքնահաւան մի գեղեցկութիւն...*

*—«Ցակոբի դուստրն է»,—բացատրում են ինձ. «հօրն ու մօր միակ զաւակը՝ փափուկ մեծացած։ Տասնեւութ տարեկան էր, բայց դեռ չէր հաւնել ոչ մէկ երիտասարդի... Նա ասում էր.— «դեռ եկած չէ իմ ընտրեալս. երազներուս մէջն է ան, հեռաւոր տենչանքներուս մէջն է և այլն։ Ես անոր կուզեմ—երբ ան երեւնայ։ Ողջ աշխարհ կործանի ալ—ես անոր կուզեմ»։ Այսպէս էր ասում և արտուտի պէս (անունն էլ Արտուտիկ էր) ճախրում էր երազների մէջ, արհամարհում էր բոլոր այն երիտասարդներին, որոնք տանջւում էին իրենով... Նա էլ զոհ գնաց։ Նրա դիակը նկատել են ուրիշ դիակների մէջ։ Այդ է եղել նրա բախտը»։*

### ԵՕԹԵՐՈՐԴ ՆԿԱՐԸ

*—«Սրա ամուսինը մեծանուն պաշտօնեայ էր, խենթի պէս սիրում էր կնոջը և վճռած էր սպաննել ինքզինքը, եթէ սրան մի բան պատահէր... Երկուսն էլ հիմա՝ թէ մարդը թէ այս գեղեցիկ կինը, անհետ կորած են... Սպանուած են, անշուշտ»։*

### ՈՒԹԵՐՈՐԴ ՆԿԱՐԸ... ԻՆՆԵՐՈՐԴ ՆԿԱՐԸ... ՏԱՍՆԵՐՈՐԴ ՆԿԱՐԸ...

*Էլ ո՞ր մէկի մասին հարցնեմ։*

*...Խաղաղութիւն ձեր դիակներին, հայ աշխարհի կանայք, հայոց աղջիկներ։*

*Վ. Վալադեան*

*Բիթլիս.*

---

## ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆԻ ԲՐԴՈՒԹԻՒՆԸ *)

### Դ.

*Համառօտակի ծանօթանալով թէ ժամանակակից և թէ նախնի միւսլիման տարրի հոգեբանութեանը, քրիստոնէի հանդէպ նրա հայեացքներուն, ուսման մակարդակին և ըմբռնումներուն, տեսնում ենք տիրող և ծառայի, ազատի և ստրուկի, միլլէթի հաքիմէի (տիրող ազգի) և ռաեայի[1]) իսկական դերին մէջ բառին բովանդակ իմաստով։*

*Եթէ հայն այսքան դժնդակ պայմաններու մէջ կարողացել է իր գոյութիւնը պահպանել, լոկ իր կուլտուրական ընդունակութեան շնորհիւ է, որին պէտքութիւն ունէր իշխող տարրը։*

*Ռաեան՝ իրենց ըստածովը մի տեսակ է մանէթուլլահ է (աստուածային աւանդ) խալամի մօտ. և նա եթէ տեսնէ իր ստրուկին ճամբու վրայ քնացած, պէտք է իր ստուերով պաշտպանէ, մինչև որ զարթնի. եթէ սակայն իր ռաեայական դերին մէջ կը մնայ. հակառակ պարագային արիւնն հալալ է։*

*Իսլամն իր հիմնադրէն պատուէր ունի օրական հինգ անգամ քեաֆուրին (անհաւատ) ուղղափառութեան հրաւիրել—ապագայ հոգևոր պատասխանատուութենէ ազատ մնալու համար. իսկ եթէ իր առաջարկը մերժուի, ազատ է ինք պատասխանատուութենէ, այն ատեն միայն ռաեան պէտք է պաշտպանէ յօգուտ իր նիւթական ապահովութեան. ինչպէս երկրագործը պահում ու սնուցանում է իր անասունը լծելու և կթելու համար։*

*Շատ անգամներ հայն սպառնացել է գաղթի երկիւղով միայն. իսկ գաղթելը այդ ժամանակներու անկազմակերպ կառավարութեան օրովը շատ դիւրին էր։ Կը թողնէր մէկ աւատապետը և կ'անցնէր միւսին սահմանը, ուր գրկաբաց կ'ընդունուէր երկրին շինութեանը և մշակոյթին համար։*

*Պատուի, գոյքի ու կեանքի ապահովութեան բացակայութեան պատճառով լայնածաւալ գաղթեր տեղի ունեցած են և երկիրը ամայացել է բոլորովին. մէկ երկու օրինակ բաւ են ժամանակի դրութիւնը պատկերացնելու համար։*

*Ալաղին բէկի տան տիրահռչակ շառաւիղներէն մէկը՝ Շէ-*

---

*) Տես «Համբաւաբեր» № 34։

[1]) Ռաեա արաբական լայ բառէն, որ կը նշանակէ արածել. որից ռաեա՝ արածող, հօտ, անասուն։

կամ Դէրսիմի ղաղաններն ու կիսավայրենի Բալաքցին և Սասունցին շատ հայերու կեանքը փրկէին։

Ի՞նչ շահեցան.—գերի վարուած հայերէն, որոնք հատ հատ ճողոպրում են և վերադառնում, իմանում ենք, որ գրեթէ վասալ թագաւորի ոյժ ու կարողութիւնն ունեցող հայդէրցի Բէօռ-Հիւսէյն փաշան անգամ գրաստի մի անասուն չունի եղեր իր իրեղէնները փոխադրել կարենալու համար…։ Հարստութեան ծովի մէջ լողացող միւս թոռները և քուրդ ժողովուրդը—չհաշուելով կոտորուածները—աւուր հացի կարօտ վիճակի մէջ են գտնւում և ցրուած ցորենի փոխինդով են սնւում։ Արդեօք ի՞նչ են խորհում այժմ. թող հետևեալ առակը պատասխանէ.—

Օձն ու գիւղացին միևնոյն յարկի տակ էին բնակւում. օձը խայթեց գիւղացու տղան՝ որ մեռաւ և գիւղացին կացինով կտրեց օձի պոչը։ Վերջը օձն ուզեց իրաւախոհութեան գալ, բայց գիւղացին ասեց. ցորչափ ես տեսնում եմ որդուս սպիտակ դամբարանը և դու կտրած պոչդ, դժուար թէ առաջուայ նման բարեկամաբար կարողանանք ապրել։

«Մարէ խոթ ու թըրպէ սպի»
Պոչատ օձ և սպիտակ դամբան…։

11 յուլիսի 1916
Մեծ Ղարաքիլիսա

Սահակ Մովսէսեան

(Վերջ)

# Մատենախօսութիւն

**Դ. ԱՆԱՆՈՒՆ. «ՌՈՒՍԱՀԱՅԵՐԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ XIX ԴԱՐՈՒՄ» (1800—1870) ՀԱՏ. Ա. 1916 Թ. ԲԱԳՈՒ. եր. 412, Գինը 2 ռ. 50 կոպ.։**

Հայ հասարակութեանը ծանօթ հեղինակի այս գլխաւոր աշխատութիւնը մի ըստ ամենայնի արժէքաւոր երկ է։ Յայտնի է՝ թէ որքան աղքատիկ է նաև մեր պատմագիտական գրականութիւնը. և աղքատ է ոչ միայն մեր հին կեանքի ուսումնասիրութեամբ, այլ և գլխաւորապէս նորի, մեր մօտիկ անցեալի։ Մեր ներկան ի հարկէ շարունակութիւնն է մեր ողջ անցեալի։ Բայց մեր այսօրը առանձնապէս՝ արդիւնք է մեր երեկի, անմիջական շարունակութիւնը, հետևանքն է մեր 19-րդ դարու պատմական-քաղաքական անցեալի։ Ահա այդ շրջանն է, որ այնքան քիչ է ուսումնասիրուած—փաստօրէն։ Ու այդպիսի մի ուսումնասիրութեան կարիքը մենք զգում ենք առանձնապէս ներկայ օրերին, երբ մեր կեանքը խճճուել է պատերազմական և քաղաքական-դիւանագիտական բարդ ցանցի մէջ, և մենք կորցրել ենք մեզ առաջնորդող լուսատուը։ Մեր անցեալի լուսաբանութիւնից պէտք է ծագի այս աստղը։ Առանց իմանալու՝ թէ ինչ ենք եղել, չենք կարող իմանալ՝ թէ ինչ պէտք է լինենք։ Անտեղի ոգևորութիւններից բղխող անխուսափելի վրիպումներից, քաղաքական ցնորապաշտութիւնից մեզ միայն մեր անցեալի ստոյգ ճանաչողութիւնը կարող է փրկել։ Ահա այս պատմական տեսակէտի բացակայութիւնն է մեր հասարակական քաղաքական դժբախտութիւններից մեծագոյնը։

Եւ Դ. Անանունի գիրքը գալիս է այդ տեսակէտից մի մեծ բաց լցնելու։ Այդ իրօք մի լուրջ գիտական ուսումնասիրութիւն է, որ էապէս տարբերւում է մեր կեանքի համար սովորական ճառական-պատմողական աշխատութիւններից։ Նախաբանում հեղինակը գրում է.—«Ներկայ աշխատութեան մէջ մենք ջանացել ենք թափանցել հայ հասարակական կեանքի խորքը, հասկանալ և լուսաբանել այն բոլոր երևոյթները, որոնց պատմական դասաւորումով կառուցուել է մեր ինքնօրինակ գոյութեան պատուանդանը։ Այստեղ մենք պատմական անցուդարձերի ու դէպքերի նկարագրութեամբ չենք զբաղուել։ Չենք զբաղեցրել մեզ նաև պատմական գործիչներն իրենց կատարած գործերով։ Մեր նպատակն է եղել գիտել մասսայական կեանքը, ըմբռնել հասարակական հաստատութիւնների իմաստը, հետևել նրանց ծագման, զարգացման և անկման ընթացքին, խելամուտ լինել ժամանակի տիրող ու պայքարող գաղափարականութեանը, առհասարակ ուսումնասիրել մեր քաղաքացիական զարգացման գործօնները»։ Հեղինակը չի առաջնորդուել որոշ «նախադրեալներով» և իր կանխակալ համոզումների համար տուեալներ ու փաստեր որոնել։ Նա աշխատել է հասարակական կեանքը առարկայօրէն ուսումնասիրել և գիտական եզրակացութիւնների յանգել։

Եւ պէտք է ասել, որ նա պատուով է դուրս եկել այդ ծանր աշխատանքի տակից, երևան հանելով լայնածաւալ հմտութիւն (էրուդիցիա) ուսումնասիրութեան մէջ։ Նա ունի հասարակական երևոյթներին մօտենալու ու քննելու որոշ ղեկավար տեսակէտ, հետևաբար և «սիստեմ»։ Որովհետև առանց մեթոդի՝ սիստեմ գոյութիւն չունի։ Եթէ որև է աշխատանքի մէջ մեթոդ չկայ՝ որքան խոշոր ու պատկառելի լինի դա ծաւալով՝ սիստեմ կազմել չի կարող։ Անանունը ունի գիտականօրէն աշխատողի այդ գլխաւոր զէնքը. նա ղեկավարուել է նիւթապաշտական (մատերիալիստական) մեթոդով։ Որքան էլ այդ միակողմանի և թերի լինի, որքան էլ այդ մեթոդը ուսումնասիրելիք առարկաներին միակողմանի գունաւորումն ու լուսաբանութիւն տայ, բայց և այնպէս այդ իր էութեամբ գիտական է. հիմնւում է փաստերի ճանաչողութեան վրայ և հասարակական երևոյթները քննում է պատճառի ու հետևանքի կապակցութեամբ. և որ գլխաւորն է՝ առարկայական փաստերին—տնտեսական-դասակարգային պայմաններին ու յարաբերութիւններին առաջին տեղն է տալիս։ Ուստի և նրա աշխատութիւնը գերազանցօրէն գիտական է։ Բացի այդ հեղինակը զերծ է մնացել «տնտեսական նիւթապաշտութեան՝ մատերիալիզմին յատուկ նեղմտութիւնից ու դաւանաբանութիւնից (դոգմատիզմից)։ Եւ այս է նրա գիտական մտածողութեան գլխաւոր յատկութիւններից մէկը, որ նա մեթոդը հասարակական կեանքի համար պրոկրուստեան մահճակալ չի դարձրել։ Իդէական-գաղափարային ու անհատական գործօններն էլ յիշատակուել են, եթէ ոչ շեշտուել, երբ ակնյայտ է եղել դրանց ազդեցութիւնը։

Այսպէս ուսումնասիրելով մեր հասարակական կեանքը բուն երկրի ժողովրդի տնտեսական-քաղաքական պայմաններով՝ հեղինակը գալիս է այն եզրակացութեան, որ «հայութեան գերագոյն դժբախտութիւնը եղել այն, որ նա, որպէս մարդկային ցեղի մի հատուած, զրկուած է եղել հնարաւորութիւնից-ապրելու և զարգանալու ազատ օտարի բիրտ ազդեցութիւնից, լինի այդ քաղաքական թէ կուլտուրական»։ Հայութիւնը չի կարողացել անարգել զարգանալ—իր «ազգային հաւաքական անհատականութիւնը» արտայայտել, որովհետև ապրել է այն բացառիկ, չարաբաստիկ պայմաններում, «ուր ոչ միայն կան արտօնեալ դասեր, այլ կայ և արտօնեալ ժողովուրդ»։ Այս է մեր պատմական դժբախտութիւնը, մեր ազգային-կուլտուրական ինքնորոշման, մեր հաւաքական եսի արտայայտութեան գլխաւոր խանգարիչ պատճառը, որ մենք ստորադաս ժողովուրդ լինելով հանդերձ՝ նաև «արտակարգ», ոչ-արտօնեալ ժողովուրդ ենք եղել։

«Այս երևոյթի բացատրութիւնը պիտի փնտրել նրա մէջ, որ մի ազգ դժբախտութիւն ունենալով կորցնելու իր քաղաքական անկախութիւնը՝ միևնոյն ժամանակ ստորադասւում է իրենից կուլտուրապէս բարձր կամ ցածր նուաճողին։ Տարբեր քաղաքակրթութիւններն՝ զգացնել են տալիս»։ Կուլտուրան յաղթանակող է, երբ «իր շուրջն է օղակում և համախմբում հոծ մարդկային զանգուածներ» կամ երբ նա «ստեղծում է արժէքներ ոչ թէ հասարակութեան մի չնչին խաւի, այլ նրա մեծամասնութեան համար»։ Այդպիսի ուժեղ, յաղթանակող մշակոյթը քանակով և որակով փոքր հայութիւնը չունէր և բնականաբար նա էլ ստրկացաւ իրենից կուլտուրապէս և ցածր կամ բարձր օտարների լծի տակ։ «Ընկաւ նրա կուլտուրան, և հետը կորաւ նաև նրա ազգային հաւաքական անհատականութիւնը։

*Այսպէս էր հայութեան վիճակը մինչեւ ռուսների գալը։ Ռուսների տիրապետութեամբ շատ բան փոխուեց, բայց ոչ շատ բան բարեփոխուեց։ Այժմ էլ այլ հանգամանքներ ազգային-կուլտուրական ինքնորոշման խանգարիչ հանդիսացան։ Նոր առաջացող առեւտրական-արդիւնաբերական դասը բուն հայկական շրջաններից դուրս շրջանառութեան մէջ դնելով իր դրամագլուխը՝ ապազգայնացաւ, կտրեց իր հոգեմտաւոր կապերը մայր-ժողովուրդից։ Գիւղացութեան դրութիւնը շատ աննախանձելի էր շնորհիւ նոր տիրապետութեամբ հաստատուած կիսաճորտական պայմանների։ Այսպիսի պայմաններում ստրուկ, դանդաղաշարժ ու դանդաղամիտ գիւղացութիւնը կուլտուրական թռիչք կատարել չէր կարող։ Ահա այդպիսի ծանր տնտեսական եւ քաղաքական աննպաստ հանգամանքներում «հայութեան հաւաքումը» —ազգային ինքնորոշումը, ինքնագիտակցութիւն եւ կուլտուրական արագ վերելք տեղի չունեցաւ։ Ուստի եւ 19-րդ դարու կիսից բռնկած վերածնութիւնը այնպիսի անորոշ ու անտարտամ բնոյթ է կրում եւ որ գլխաւորն է, տիրող ժողովուրդը հետեւելով իր բուն երկրի կարգերին՝ հովանաւոր հանդիսացաւ ազնուական-աւատական կարգերին եւ մեղնում, փայփայեց թիւրք եւ փոքրամասնութիւն կազմող հայ ազնուականութեանը եւ միանգամայն ծանր հասարակական պայմաններ ստեղծեց հայ ժողովրդի մեծամասնութեան համար։ Պարզ է, որ այս պայմաններում հայութիւնը հրաշքներ գործել չէր կարող։*

*Ահա մեր հասարակական եւ կուլտուրական յետամնացութեան գլխաւոր պատճառները, որոնց առարկայական ուսումնասիրութիւնն է տալիս Դ. Անանունի ըստ ամենայնի ուշադրութեան ու հետաքրքրութեան արժանի գիրքը։*

*Ջերմագինս յանձնարարելով պ. Անանունի այս երկը հայ պատմասէր ընթերցողներին, ի սրտէ կը ցանկանք, որ շուտով լոյս տեսնի եւ Բ. հատորը։*

*Վ. Խորէնի*

# Մամուլ

*Ամերիկացի մի դիւանագէտ հայկական ինքնավարութեան մասին՝ «New Armenia»-ում տպագրած է մի ուշագրաւ յօդուած, որից առաջ ենք բերում հետեւեալ տողերը.*

*«Շատերին տարօրինակ պիտի թուի, եթէ յայտնենք թէ, միլիոնաւոր հայեր իրենց կեանքը զոհած են ուրիշ ազգերի փառքի եւ մեծութեան համար, քան իրենց սեփական հայրենիքին։ Նրանք իրենց արիւնը չը թափեցին ուրիշների չակերտաւոր երջանկութեան համար, որպէսզի մի օր միացուէին Ռուսաստանին կամ մի «Նոր Եգիպտոսի»։ Պատմութեան մէջ չըկայ հայերի նման մի ազգ, որ այնքան զոհուած լինի ազգային սկզբունքի պաշտպանութեան համար։ Եւ եթէ համաշխարհային այս հրդեհից յետոյ ազատութիւն չըտրուի հայոց, դա ներկայ դիւանագիտութեան կողմից պատրաստուած մի մեծ ոճիր պիտի լինի։ Եւ եթէ փոքր ազգերի ապագայ բարելաւութեան հարցը աւելի մեծ տեղ պիտի բռնէ համեւրոպական ներկայ պատերազմում, ապա նրանց ժամանակցութեան չափանիշից դատելով, մինչեւ պատերազմի վախճան՝ հայոց ազատագրութեան հարցը պէտք է իրականացման ճանապարհի մէջ մտնի»։*

*Ապա յօդուածագիրը առաջարկում է գործադրել Լորդ Բրայսի սկզբունքը՝ Հայաստանի ժեռելներն էլ հաշուի առնելու համար յաշուեյարդարութեան օրը եւ մատնանշում հայ ժողովրդի մշակութային արժէքը եւ կատարած ծառայութիւնը Արեւելքում՝ քաղաքակրթութեան օգտին։*

*«Մշակ» թերթի № 184-ում՝ Բ. Իշխանեանը խօսելով* Кавк. Слово-*ում տպագրուած Մագխարանտի յօդուածի մասին՝ հետեւեալ կարծիքն է յայտնում.*

*«Մենք ոչ միայն տրտունջ ու բողոք կամ* «негодованie» *չենք արտայայտի, եթէ հակառակ սպասածների եւ տուեալների, մի գեղեցիկ օր իրականանայ Հայաստանի ինքնավարութիւնը, այլ եւ կարտայայտենք մեր գոհունակութիւնը դրա առիթով, իբրեւ կատարուած փաստի, որովհետեւ ճնշուած ժողովուրդների ազգային կուլտուրական ստացուածքների ազատ զարգացման լաւագոյն գրաւականը եղել է եւ միշտ կը մնայ ինքնավարութիւնը։*

*«Եթէ մենք աննեկսիան գերադասել ենք ինքնավարութիւնից՝ թիւրքահայոց վիճակի տնօրինման գործում, ապա ոչ այն պատճառով, որ մենք առհասարակ գերադասել ենք աննեկսիան ինքնավարութիւնից, որպէս ազգային հարցի լուծման մեթոդ, այլ պարզապէս հետեւեալ պատճառով. մենք ասել ենք եւ ասում ենք այժմ աւելի համոզուած, որ հայկական ինքնավարութիւն առանց՝ թիւրքաց Հայաստանի փէշերում չի կարող տեւական ու ապահով ապագայ ունենալ...»։*

*Եւ պարոնը հնարաւորութիւն չունենալով ընդարձակ հիմնաւորելու այդ տեսակէտը, հետեւեալ փաստն է առաջ բերում. թէ «հայկական ինքնավարութիւն չի կարող տեւական լինել» եւ թէ «կարճ ժամանակի ընթացքում աստիճանական կլանումների առարկայ կը դառնայ ինքնավար Հայաստան եւ այլն...»։*

*Պարոնը երբոր ընդունում է սկզբունքով, որ ժողովրդների ազգային-կուլտուրական ազատ զարգացման լաւագոյն գրաւական եղել է եւ միշտ կը մնայ ինքնավարութիւնը, ինչու ապա չի համաձայնում Հայաստանին ինքնավարութիւն տրուելուն, երբ ինքնավար Հայաստանում՝ հայ ազգը թէ ֆիզիքապէս եւ թէ մտաւորապէս աւելի պիտի կարողանայ զարգանալ եւ յառաջադիմել, քան այս կամ այն կուլտուրապէս զօրաւոր պետութեան կցուելով։*

*Իսկ չընդունել ինքնավարութիւն, ենթադրելով միայն՝ որ նա տեւական չի կարող լինել, այդ ոեւէ իրաւական հիմք չի կարող ունենալ, որովհետեւ ժամանակաւոր ինքնավարութեան ներքեւ զարգացած ու առաջադիմած հայութիւնը՝ նախ աւելի լաւ կարող է դիմադրաւել օտար ազդեցութիւններին, երկրորդ՝ եթէ նրանից յետոյ կցուի էլ մեկ զօրաւոր պետութեան, աւելի ուժեղ եւ հաստատուն պիտի լինի՝ քան եթէ հիմա այս քայքայուած վիճակով կցուի։*

## Վ Ր Ի Պ Ա Կ

*«Համբաւաբերի» № 34-ում, էջ 1087, տող 46-ում տպագրուած «ոչ հնարովի հետեւանքներ» նախադասութիւնը պէտք է լինի «ոչ հնարովի յերիւրանքներ»։*

*Նոյն №-ի էջ 1078, տող 46-ի ներքեւ մոռացուած է յիշել «Թարգմ. Ա. Ցէթվաճեան»։*

*Նոյն №-ի էջ 1064, տող 28 ում յիշուած «Բաթում» բառը պիտի լինի «Երզնկա»։*

*Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ*
*Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ*

# ԹԻՖԼԻՍԻ ՎԱՃԱՌԱԿԱՆԱԿԱՆ ԲԱՆԿ

*(Հիմնուած 18 յունիսի 1913 ամի)*

ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ ԹԻՖԼԻՍՈՒՄ

ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐ ԲԱԳՒՈՒՄ ԵՒ ԳԱՆՁԱԿՈՒՄ

## ՀԱՇՈՒԵԿՇԻՌ

*առ 1 օգոստոսի 1916 ամի*

### ԱԿՏԻՒ *(Առ)*

| | | |
|---|---|---|
| Դրամարկղ և ընթացիկ հաշիւներ . . . | ռ. | 1,977,168 41 |
| Զեղչ մուրհակների, առևտրական տիրաժի ու պարտաթղթեր . . . . | » | 8,522,659 36 |
| Փոխառութիւններ գրաւականով տոկոսաբեր թղթերի, ապրանքների և այլն . | » | 317,025 56 |
| Յատուկ ընթացիկ հաշիւներ (en call) . | » | 9,667,763 29 |
| Բանկին պատկանեալ արժէքաւոր թղթեր. | » | 235,969 97 |
| Բանկի թղթակիցներ՝ | | |
| ա) Թղթակիցներ իրենց հաշուին (Loro) | » | 1,100,811 94 |
| բ) Բանկի հաշուին (evostro) . . | » | 3,146,800 26 |
| Հաշիւ բաժանմունքների հետ . . | » | 4,989,977 10 |
| Բողոքուած մուրհակներ . . . | » | 1,469 — |
| Ընթացիկ ծախսեր . . . . | » | 140,400 31 |
| Փոխանցիկ գումարներ. . . . | » | 4,405 21 |
| Կարգ ու սարք . . . . . | » | 18,316 16 |
| Անշարժ կայքեր . . . . . | » | 621,513 72 |
| Վերադարձնելիք ծախքեր . . . | » | 42,635 94 |
| Յանձնարարեալ մուրհակներ և արժեթղթեր | » | 3,805,629 97 |
| Պետական տուրքեր . . . . | » | 55,705 65 |
| | Ռուբլի | 34,648,521 85 |

### ՊԱՍՍԻՒ *(Տուր)*

| | | |
|---|---|---|
| Դրամագլուխ լրիւ վճարեալ . . . . | ռ. | 5,000,000 — |
| Պահեստի գումար . . . . . | » | 80,287 74 |
| Բանկի անշարժ կայքերի հիմնադրամի դեջուցում | » | 16,637 85 |
| Աւանդներ և ընթացիկ հաշիւներ . . | » | 18,711,667 93 |
| Կրկնադեղջ և յատուկ հաշիւ . . . | » | 162,345 91 |
| Բանկի թղթակիցներ՝ | | |
| ա) Թղթակիցներ իրենց հաշուին (Loro) | » | 364,010 69 |
| բ) Բանկի հաշուին (evostro) . . | » | 95,617 58 |
| Բաժանմունքների հաշիւ կենտրոնի հետ . | » | 5,027,912 28 |
| Գանձուելիք մուրհակներ և արժեթղթեր . | » | 3,805,629 97 |
| Տոկոսներ վճարելի ի հաշիւ աւանդների և ընթացիկ հաշիւների . . . | » | 347,804 10 |
| Ստացուած տոկոսներ և կոմիսիա իբրև առեալ աւանդների և ընթացիկ հաշիւների համար վճարելիքներից . . . | » | 582,720 60 |
| Տոկոսներ ստացուած ի հաշիւ 1917 ամի . | » | 14,633 80 |
| Փոխանցիկ գումարներ. . . . | » | 290,885 73 |
| Վճարուելիք փոխանակագրեր. . . | » | 45,421 07 |
| Բանկի բաժնեթղթերի հաշուին չվճարուած շահաբաժին . . . . . | » | 84,460 — |
| Հերուայ շահի մնացորդը . . . | » | 18,216 60 |
| | Ռուբլի | 34,648,251 85 |



Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.